Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 24 (102)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 24 (102)



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐՆ Է

*«Կոնստիտուցիայի հոդվածները հանդիսանում են ոչ միայն քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների իրավաբանական ձևակերպումը, այլ և մարդկանց դաստիարակության հզոր գործոն»* (Կալինին՝ «Կոմունիստական դաստիարակության մասին»)։

*1936 թ. դեկտեմբերի 5-ին սովետների Համամիութենական 8-րդ արտակարգ համագումարը հաստատեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության նոր Կոնստիտուցիան, որը մեր ժողովրդն*

## ՈՒՂՂՈՒՄ

«Աֆիտատորի Բլոկնոտ»-ի № 22(100)-ում վրիպել են հետևյալ սխալները.

18-րդ էջի ներքևից 9-րդ տողում՝ «1919 թ.» կարդալ «1913 թ.»:

26-րդ էջի վերևից առաջին տողում՝ «11057 ռ.» կարդալ «11057 հազար ռուբլի»:

40-րդ էջի ներքևից 3-րդ տողում՝ «2157 հազար» կարդալ «215,7 հազար»:

67-րդ էջի «Հայֆիլհարմոնիան պարգևատրվեց «Աշխատանքային Կարմիր Դրոշ»-ով» նախադասությունը կարդալ՝ «Հայֆիլհարմոնիան պարգևատրվեց «Աշխատանքային Կարմիր Դրոշ»-ի շքանշանով»:

---

Պատասխանատու խմբագիր՝
Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Սրբագրիչ՝ Հ. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ

ՎՖ 2543
Պատվեր՝ 1046. Տիրաժ՝ 8028
Հանձնված է արտադրության 27/XI 1940 թ.
Ստորագրված է տպագրության 2/XII 1940 թ.

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան

Отдел пропаганды и агитации ЦК КП(б) Армении
Блокнот Агитатора
№ 23 (101)

Գինը 25 կոպ.

Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 24 (102)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 24 (102)



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐՆ Է

*«Կոնստիտուցիայի հոդվածները հանդիսանում են ոչ միայն քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների իրավաբանական ձևակերպումը, այլ և մարդկանց դաստիարակության հզոր գործոն»* (Կալինին՝ «Կոմունիստական դաստիարակության մասին»):

*1936 թ. դեկտեմբերի 5-ին սովետների Համամիութենական 8-րդ արտակարգ Համագումարը հաստատեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Նոր Կոնստիտուցիան, որը մեր ժողովուրդն*

անվանում է նրա ստեղծողի, ոգեշնչողի անունով— Ստալինյան Կոնստիտուցիա։

Առաջին կոնստիտուցիայի ընդունման օրից (1924 թ.) մինչև Ստալինյան Կոնստիտուցիայի հաստատման օրը (1936 թ.) անցել էր ավելի քան 12 տարի. այդ ժամանակամիջոցում արմատապես փոխվել է մեր երկրի էկոնոմիկան, նրա հիման վրա՝ հասարակական հարաբերությունները։ Ստալինյան Կոնստիտուցիան արդյունք է ստալինյան հնգամյակների ընթացքում սովետական երկրի ձեռք բերած հսկայական հաջողությունների՝ տնտեսության, կուլտուրայի վերելքի, աշխատավորության կենցաղի բարելավման, երկրի ռազմական պաշտպանունակության բարձրացման և այլ բնագավառներում։

Ստալինյան երկու հնգամյակների հաջող ավարտման հետևանքով, մեր երկիրը՝ հետամնաց, ագրարային երկրից վերածվեց խոշոր, ինդուստրիալ-ագրարային երկրի, որտեղ թագավորում է առաջավոր տեխնիկան ու կուլտուրան։

Խոշոր փոփոխությունների է ենթարկվել ՍՍՌՄ-ի արդյունաբերությունը, մեր երկրի ողջ էկոնոմիկան։ 1924 թվին, երբ ընդունվեց առաջին Կոնստիտուցիան, արդյունաբերու-



թյան արտադրանքը չէր հասնում նույնիսկ նախապատերազմյան արտադրանքի 50 տոկոսին, իսկ ծանր արդյունաբերության առանձին ճյուղերը, ինչպես, օրինակ՝ չուգունի, շոգեքարշի արտադրությունը շատ ավելի հետ էին։ Ստալինյան հնգամյակների ընթացքում մեր երկիրը ոչ միայն վերականգնեց նախկին արդյունաբերական ձեռնարկները, այլև ստեղծեց արդյունաբերության բազմաթիվ նոր ճյուղեր։

Բավական է հիշել այնպիսի գիգանտների կառուցումն այդ տարիների ընթացքում, ինչպիսիք են Խարկովի տրակտորի գործարանը, Ստալինգրադի Ձերժինսկու անվան տրակտորի գործարանը, Չելյաբինսկի Ստալինի անվան տրակտորի գործարանը, Ռոստովի գյուղատնտեսական մեքենաների գործարանը, Մոսկվայի Ստալինի անվան ավտոգործարանը, Մագնիտոգորսկու Ստալինի անվան կոմբինատը, Կուզնեցկի Ստալինի անվան կոմբինատը և հարյուրավոր ուրիշ խոշոր գիգանտներ, իրենց տասնյակ հազարավոր բանվորներով ու բանվորական քաղաք-ավաններով, որպեսզի պատկերացվի, թե ի՞նչ հսկայական փոփոխությունների է ենթարկվել նախկին հետամնաց կալվածատիրական Ռուսաստանը։

Մեր երկրի ինդուստրիայի զարգացման հզոր թափն իր արտահայտությունն է գտնում երկրի ողջ արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ, որը 1926 թ. կազմում էր 15,9 միլիարդ ռուբլի, իսկ 1938 թ.՝ 106,8 միլիարդ ռուբլի—աճ 6,7 անգամ։

Ընկեր Ստալինի լոզունգը՝ կոլխոզային ունևոր կյանք ստեղծելու, տարեկան 7—8 միլիարդ փութ հացահատիկ ստանալու մասին, կազմակերպել է ողջ կոլխոզային գյուղացիությանը, հանուն նորանոր հաջողությունների։ Այդ հետևանքով կոլխոզներն ու սովխոզները 1940 թ. տվին մոտ 7 միլիարդ փութ հացահատիկ, չնայած ոչ նպաստավոր կլիմայական պայմաններին, նախապատերազմյան 4—5 միլիարդ փթի և 1925 թ. 4,4 միլիարդ փթի դիմաց։ Մեր գյուղը հիմնովին փոխել է իր դեմքը. եթե 1926 թ. կոլեկտիվացված էր գյուղական տնտեսությունների 1,4 տոկոսը, ապա դեռ 1938 թ. կոլխոզների մեջ ընդգրկված էր գյուղացիական տնտեսությունների 93,5 տոկոսը։

Սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում, ապահովեց սովետական երկրի ողջ ազգաբնակչության համար ունևոր կյանքի



զարգացումը։ ՍՍՌՄ ժողովրդական ողջ եկամուտը, որը վերջին 12 տարվա ընթացքում աճել է ավելի, քան 5 անգամ (1926 թ. 21,7 միլիարդ ռուբլուց 1938 թվին հասնելով մինչև 105 միլիարդ ռուբլու), ծախսվում է ակումբների, բժշկասանիտարական հիմնարկների, կինոների, դպրոցների, թատրոնների կառուցման ու կազմակերպման վրա, մեր հայրենիքի պաշտպանունակության բարձրացման վրա։

Ոչ մի երկիր չունի բնակչության այնպիսի աճ, ինչպիսին գոյություն ունի ՍՍՌՄ-ում։ Միության միջին 16 տոկոսի աճի կողքին գոյություն ունեն 10-ից ավելի այնպիսի միութենական ռեսպուբլիկաներ, որտեղ ազգաբնակչության աճը 40—45 և 50 տոկոսից ավելի է։

Մեր երկրի էկոնոմիկայի մեջ կատարված արմատական փոփոխությունների, դասակարգային անհաշտ պայքարի հետևանքով, փոխվել է նաև դասակարգային ստրուկտուրան։ Ընկեր Ստալինը 1936 թ. նոյեմբերի 29-ին Սովետների 8-րդ համամիութենական արտակարգ համագումարում ՍՍՌՄ-ի կոնստիտուցիայի մասին իր զեկուցման մեջ, բնորոշելով մեր երկրի դասակարգային կառուցվածքի մեջ տեղի ունեցած

փոփոխությունները, ասում է. «Չկա այլևս կապիտալիստական դասակարգը արդյունաբերության բնագավառում։ Չկա այլևս կուլակների դասակարգը գյուղատնտեսության բնագավառում։ Չկան այլևս վաճառականներն ու սպեկուլյանտներն ապրանքաշրջանառության բնագավառում։ Այսպիսով, բոլոր շահագործող դասակարգերը վերացվեցին։

*Մնաց բանվոր դասակարգը։*

*Մնաց գյուղացիների դասակարգը։*

*Մնաց ինտելիգենցիան»։*

Այժմ, մեր բանվոր դասակարգը, դա կապիտալիզմի կողմից շահագործվող պրոլետարիատը չէ. ՍՍՌՄ-ի բանվորներին և ողջ ժողովրդին են պատկանում արտադրության բոլոր միջոցները. նրանք հանդիսանում են այդ միջոցների տերն ու տնօրենը. մեր բանվորն աշխատում է իր համար, իր սոցիալիստական պետության համար, հանուն ընդհանուրի, կոլեկտիվի շահերի։ Այժմ, մեր գյուղացիությունը, դա՝ ցարական ֆեոդալական Ռուսաստանի ցիրուցան գյուղացիությունը չէ, իր գաճաճ տնտեսություններով ու նախնադարյան հետամնաց տեխնիկայով. մեր գյուղացիությունը կոլխոզային գյուղացիությունն է— կոլտնտեսականները, որոնք հո-



ղը մշակում են կոլեկտիվ աշխատանքով, բարձր տեխնիկայի օգտագործման հիման վրա։

Ստալինյան Կոնստիտուցիան օրենսդրորեն արձանագրել և ամրացրել է մեր ժողովրդի համար այն, ինչ ձեռք է բերված համառ պայքարի հետևանքով։

Կոնստիտուցիայի առաջին գլուխը, բնորոշում է ՍՍՌՄ-ի հասարակական կառուցվածքը. 4-ՐԴ ՀՈԴՎԱԾՈՒՄ արձանագրված է.

«ՍՍՌՄ-ի տնտեսական հիմքն են կազմում տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը, որոնք հաստատվել են տնտեսության կապիտալիստական սիստեմի լիկվիդացիայի, արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության վերացման և մարդու կողմից մարդու շահագործումը ոչնչացնելու հետևանքով»։

ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիան աշխատավորությանը տվեց աշխարհում դեռ չտեսնված իրավունքներ—աշխատանքի, հանգստի, կրթության, ծերության հասակում ապահովման և այլն։ Պատմությունը դեռ չի տեսել ոչ մի կոնստիտուցիա, որն այնպես հագեցված լինի իսկական սոցիալիստական մար-

դասակարգությամբ, ժողովրդի նկատմամբ այնպիսի սիրով, ինչպիսին Ստալինյան Կոնստիտուցիան է:

ՀՈԴՎԱԾ 118-ում գրված է.— «ՍՍՌՄ քաղաքացիները ունեն աշխատանքի իրավունք, այսինքն՝ ապահովված աշխատանք ստանալու իրավունք, նրանց աշխատանքը վարձատրելով նրա քանակի ու որակի համապատասխան»:

ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացի ապահովված է աշխատանքով, գործազրկությունը՝ կապիտալիստական կարգերի անխուսափելի չարիքը, մեր երկրում իսպառ ու անվերադարձ վերացել է դեռ 1933 թվին: Արդյունաբերության վերելքը կլանում է միլիոնավոր մարդկանց: Քաղաքի ազգաբնակչության աճը— 12 տարվա ընթացքում ավելացել է 24,4 միլիոնով: Գյուղատնտեսության մեխանիզացիայի հետևանքով բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը և ստեղծվում սոցիալիստական արդյունաբերության համար ազատ բանվորների ռեզերվներ, որոնք ապահովում են նրա բուռն վերելքը: Այսպես օրինակ. 1937 թվին, կոմբայնների, տրակտորների կոլխոզներում կատարած աշխատանքի վրա ծախսվել է 1,9 միլիոն մարդու աշխատանք, առանց ՄՏԿ-



ների օգնության. նույն քանակությամբ աշխատանքի համար պետք է ծախսվեր 9,1 միլիոն մարդու աշխատանք: Այսպիսով, միայն մեկ տարվա ընթացքում մեքենայացումը գյուղում տվեց 7,2 միլիոն մարդու աշխատանքի խնայողություն: Ընկեր Ստալինը ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում խոսելով այն մասին, որ սովետական գյուղում վաղուց արդեն չկան այնպիսի գյուղացիներ, որոնք ելք փնտրելու համար փախչում են գյուղից, քաղցի ու աղքատության ճիրաններից. մեկ ձևի շահագործումից ընկնելով այլ ձևի շահագործման՝ գործարանային շահագործման ճիրանները՝ ասում է. «Այժմ խոսքը վերաբերում է նրան, որպեսզի առաջարկել կոլխոզներին, հարգել մեր խնդիրը և տալ մեզ զարգացող արդյունաբերության համար ամեն տարի թեկուզ մեկ ու կես միլիոն երիտասարդ կոլխոզնիկներ»:

Չնայած այս բոլորին, ՍՍՌՄ արդյունաբերության և գյուղատնտեսության հուժկու վերելքը պահանջում է է՛լ ավելի շատ թվով որակյալ բանվորներ, մասնագետ դազգահավորներ:

Այստեղից էլ առաջ է գալիս պետական աշխատանքային ռեզերվների ստեղծման ու զարգացման պահանջը: Այդ պահանջի բա-

վարարման նպատակին է ձգտում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հրամանագիրը՝ «ՍՍՌՄ-ի աշխատանքային ռեզերվների մասին»: Ըստ այդ Հրամանագրի, մեր արդյունաբերությունն ամեն տարի 800 հազարից մինչև մեկ միլիոն որակյալ աշխատող ձեռք է ստանալու քաղաքի և գյուղի աշխատավորական երիտասարդությունից, արհեստագործական դպրոցների, ֆաբրիկագործարանային ուսուցման և երկաթգծային դպրոցների մեծ ցանց ստեղծելով ամբողջ երկրում:

Այսպիսով, Սովետական Միության քաղաքացին ոչ միայն աշխատանքի իրավունք ունի և ապահովված է նրանով, ինչպես պահանջում է Կոնստիտուցիան, այլև մեր պետությունն ամեն տարի միլիոններ է ծախսում՝ աշխատանքի պահանջը բանվորներով, բանվորական որակյալ ուժով ծածկելու համար:

Այլ է դրությունը կապիտալիստական երկրներում: Այնտեղ գործազրկությունը քայքայում է հազարավոր աշխատավորական ընտանիքներ: Տասնյակ հազարավոր բանվորներ և գյուղացիներ, իրենց կյանքն անց են կացնում կիսաքաղց վիճակում՝ աշխատանք ու հաց փնտռելով: 1940 թ. առաջին կիսին՝ միայն ԱՄՆ-ում չնայած



ռազմական արդյունաբերության տենդային աճին, պրոֆմիության յուրաքանչյուր 5 անդամից մեկը գործազուրկ էր. այդ երկիրն ունի ավելի քան տաս միլիոն գործազուրկներ: 1939 թվին կապիտալիստական երկրներում (բացի Հնդկաստանից, Չինաստանից և ուրիշ գաղութային երկրներից) կային 18 միլիոն գործազուրկներ: Անգլիայում այս տարվա սկզբներին ամբողջ բանվորների 10 տոկոսը գործազուրկ էր: Գործազուրկների հոծ բանակի մշտական ազատ ուժի առկայությունն օգտագործելով, գործարանատերերն ու ֆաբրիկանտներն ավելի ուժեղացնում են շահագործումը, ուզած պայմաններով բանվորներ վարձելու միջոցով:

Կոնստիտուցիայի 119-ՐԴ ՀՈԴՎԱԾՈՒՄ ասված է. «ՍՍՌՄ-ի քաղաքացիները ունեն հանգստի իրավունք»:

Ութժամյա բանվորական օրը ՍՍՌՄ-ում հանդիսանում է ամենակարճ աշխատանքային օրն ամբողջ աշխարհում: Կապիտալիստական երկրներում աշխատանքային օրվա տևողությունը հավասար է 10—12 ժամվա:

Անգլիայում բանվորական շաբաթն անցնում է 70 ժամից. լրիվ կերպով չեղյալ է հայտարարված օրենսդրությամբ սահմանված կանանց և երեխաների աշխատան-

քի կարգը. 16—18 տարեկան երիտասարդները աշխատում են 10—12 ժամ։

Ֆրանսիայում դեռ մինչև երկրորդ իմպերիալիստական պատերազմը վերացված էր 8-ժամյա աշխատանքային օրը և կիրառվում էր 60-ժամյա բանվորական շաբաթ։ Այժմ փաստորեն կիրառվում է 72 ժամյա բանվորական շաբաթ։

Գերմանիայում վերացված են անչափահասների աշխատանքի սահմանափակումները և օրենքը թույլ է տալիս 10—12 և նույնիսկ 16 ժամյա աշխատանքային օր։

Յապոնիայում օրենքով սահմանված է 12 ժամյա աշխատանքային օր— 16 տարեկանից բարձր բոլոր բանվորների համար, իսկ փաստորեն աշխատանքային օրը տևում է մինչև 16 ժամ և ավելի, անչափահաս երեխաներն աշխատում են օրական 13—17 ժամ։

Բոլոր կապիտալիստական երկրներում վերացված են կիրակի և հանգստի օրերը, փաստորեն բանվորները չեն հանգստանում։ Արձակուրդներ ադմինիստրացիայի հաշվին գոյություն չունեն։

Մեզ մոտ— սոցիալիզմի երջանիկ երկրում— աշխատանքի տևողությունն ութ ժամ է, իսկ վտանգավոր ցեխերում և արդյունա-



բերական ճյուղերում 7 ժամ։ Ամեն մի բանվոր և ծառայող ունի շաբաթական մեկ օր ազատ, իր հանգստի համար, տարվա մեջ՝ 6 օր տոնական հանգստի օրեր, բացի այդ, ամեն մի աշխատողին տրվում է օրենքով սահմանված 12, 18 և 24 աշխատանքային օրով արձակուրդ։

ՍՍՌՄ-ի ամեն մի աշխատող երկարատև և կարճատև հիվանդությունների դեպքում սահմանված կանոններով ստանում է իր աշխատավարձը։

Մեր բանվորի, ծառայողի, կոլխոզնիկի առողջությունն ու հանգիստն ապահովվում է նաև սանատորիաների, հանգստի տների, պետական բազմաթիվ առողջապահական հիմնարկների լայն տարածված ցանցի միջոցով։ Միայն 1940 թ. ընթացքում ՍՍՌՄ-ի հիվանդանոցներում մահճակալների թիվը ավելացել է 21.400 հատով, ծննդատներում— 55.200 հատով։ Գյուղական վայրերում այժմ գործում են 12,5 հազար բժշկական կայաններ, 35 հազար ֆելդշերական ու ծննդաբերական կայաններ։ 1913 թվի հետ համեմատած, մահճակալների թիվը քաղաքային հիվանդանոցներում միայն, աճել է ավելի քան 5 անգամ, ծննդատներում՝ 34 անգամ։ Մինչև ռևոլյու-

ցիան Ռուսաստանում կար 19,800 բժիշկ, այժմ աշխատում են 117.000 բժիշկ, կառուցված են հարյուրավոր սանատորիաներ, հանգստի տներ, հանգստի պարկեր, որտեղ ամեն տարի հանգստանում են մի քանի միլիոն աշխատավորներ։

Աշխատավորության առողջապահության բարելավման և հանգստի հետևանքով է, որ սովետական երկրում մահացությունը 1913 թ. համեմատությամբ իջել է ավելի քան 2 անգամ. 1926—39 թ. թ. ընթացքում մեր ազգաբնակչությունն աճել է 16 տոկոսով։ Նույն այդ ժամանակաշրջանում կապիտալիստական երկրներում ազգաբնակչության աճը հավասար էր միայն 8 տոկոսի։

120-ՐԴ ՀՈԴՎԱԾՈՒՄ ասված է.

«ՍՍՌՄ քաղաքացիները նյութական ապահովագրության իրավունք ունեն ծերության, ինչպես նաև հիվանդության և աշխատունակությունը կորցնելու դեպքում»։

Սոցիալիստական ապահովագրության բազմաթիվ ձևերի միջոցով սովետական իշխանությունն իրականացնում է Կոնստիտուցիայի այս պահանջը, որը ելնում է ստալինյան հոգատարությունից՝ մարդու նկատմամբ. միայն 1939 թ. բյուջեով Սովետական Միության աշխատավորության սոցիա-



լական ապահովագրության, ծերերի և հաշմանդամների բուժման, արտադրական որակավորում տալու համար ծախսված է 9,5 միլիարդ ռուբլի։ Հայկական ՍՍՌ-ում, բացի պրոֆմիությունների միջոցներից, միայն պետական սոցիալական ապահովագրության ծախսերն ըստ տարիների կազմում են՝ 1937 թ. 6 միլիոն 820 հազար ռուբլի, 1938 թ. 12,296 հազար ռուբլի, 1939 թ. 13,908 հազար ռուբլի, 1940 թ. ծախսվելու է մոտ 16,497 հազար ռուբլի, իսկ 1941 թվի համար նախատեսված է 17.439 հազար ռուբլի. մենակ և առանձին խնամքի կարիք ունեցող հաշմանդամների և զառամյալների համար գոյություն ունի հաշմանդամների տների լայն ցանց, ՀՍՍՌ-ում գոյություն ունեն հաշմանդամների և զառամյալների 4 տներ։ Այդտեղ ապրում են 320 հաշմանդամներ և ծերեր, որոնց սննդի, հագուստի և պահպանման ծախքերը կազմում են տարեկան 1,400 հազար ռուբլի։

Առ 1-ը հունվարի 1940 թ. Հայաստանում աշխատանքի նպաստ ստացողների թիվը հասնում է մինչև 9300 հոգու, որոնք ստացել են 9,561 հազար ռուբլի պետական օգնություն, միայն մեկ տարվա ընթացքում։

Սոցիալական ապահովագրության աշխատանքները գյուղում հիմնականում իրականացվում է կոլխոզներում փոխադարձ օգնության դրամարկղների կազմակերպման միջոցով։

Հայաստանում այժմ գործում են 1083 կոլխոզային փոխադարձ օգնության դրամարկղներ, որոնց մեջ ընդգրկված են 330 հազար կոլխոզնիկներ։ Գյուղատնտեսական արտելի Ստալինյան կանոնադրության հիման վրա, կոլխոզնիկների ընդհանուր ժողովների որոշմամբ 1939 թ. միայն կոլխոզների եկամուտներից այդ դրամարկղներին փոխանցված է 5,500 հազար ռուբլի, ծեր, հաշմանդամ, անաշխատունակ կոլտնտեսականներին օգնելու համար։

ՀՈԴՎԱԾ 121— «ՍՍՌՄ քաղաքացիները ունեն կրթության իրավունք».— Այդ իրավունքը մեր Կոնստիտուցիան ապահովում է ընդհանուր պարտադիր—տարրական կրթությամբ, արտադրական-տեխնիկական ուսուցմամբ և այլն։ Կոնստիտուցիայի այս հոդվածը հիմնված է այն հսկայական հաջողությունների վրա, որ մենք ունենք ժողովրդական լուսավորության բնագավառում։ «Մենք ցանկանում ենք,— ասել է ընկեր Ստալինը,— բոլոր բանվորներին և բոլոր



գյուղացիներին դարձնել կուլտուրական և կրթված և մենք կանենք այդ ժամանակի ընթացքում»։

Ժողովրդի առաջնորդի՝ ընկեր Ստալինի այս ցուցումը հաջողությամբ իրականացվում է։ Առ 1-ը հունվարի 1939 թվին գրագետները ՍՍՌՄ-ում 9 տարեկանից բարձր հասակ ունեցող քաղաքացիների մեջ կազմում են 81,2 տոկոս։ Ցարական Ռուսաստանում այդ տոկոսը չէր անցնում 24-ից։ Եթե 1926 թ. գյուղում ունեինք 9 տարեկանից բարձր հասակ ունեցող բնակչության 45 տոկոս գրագետներ, իսկ քաղաքում՝ 76,3 տոկոս, ապա 1939 թ. գյուղում ունենք 76,8, իսկ քաղաքում՝ 89,5 տոկոս։ Առ 1-ը հունվարի 1939 թ. ՍՍՌՄ բոլոր ուսումնական հիմնարկներում սովորում էին 37,9 միլիոն մարդ, որոնցից 18,4 միլիոնը կանայք, միջին հաշվով ՍՍՌՄ ամեն մի հազար քաղաքացուն ընկնում է 223 սովորող, այդ թվից՝ միջնակարգ և ոչ-լրիվ միջնակարգ դպրոցներում՝ 182 հոգի, այն ժամանակ, երբ Անգլիայում ընկնում է 144 մարդ, Գերմանիայում՝ 128 մարդ,



Ֆրանսիայում՝ 135, Իտալիայում՝ 120 մարդ և այլն։ Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, Ճապոնիայում միասին վերցրած՝ 1938—39 թ. թ. կային 32 միլիոն դպրոցականներ։ Մենք այժմ ունենք մի միլիոն 130 հազար բարձրագույն կրթություն ունեցող, որոնց 70%-ը այդ կրթությունը ձեռք են բերել սովետական կարգերում։

Սովետական Հայաստանում գրագիտության և ժողովրդական լուսավորության գծով 20 տարվա ընթացքում հսկայական գործ է կատարված։ 1918—1919 թ. թ. Հայաստանում գոյություն ունեին միայն 156 դպրոցներ, 18.600 աշակերտներով։ Այժմ մենք ունենք 1184 դպրոց, որտեղ սովորում են 326.612 աշակերտ։ Նոր ստեղծված 10 բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 7426 ուսանող, ստեղծված են 14 մանկավարժական ուսումնարաններ, 68 տեխնիկումներ, որտեղ սովորում են 11.000 երիտասարդներ։ Այդ ուսումնական հաստատությունները ամեն տարի մի քանի հարյուր մասնագետներ են տալիս մեր երկրին։

Ստալինյան Կոնստիտուցիայի 122-ՐԴ ՀՈԴՎԱԾՈՒՄ ասված է. «Կնոջը ՍՍՌՄ-ում



տղամարդուն հավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում»։

Ստալինյան Կոնստիտուցիան ապահովում է կնոջ համար տղամարդուն հավասար աշխատանք ստանալու իրավունք, հավասար աշխատավարձ ստանալու իրավունք, կրթության, հանգստի իրավունք, մոր ու մանկան շահերի պետական պաշտպանություն, ընտրելու և ընտրվելու իրավունք։

Մեր պետության ողջ աշխատողների $1/3$-ը կազմում են կանայք։ Նրանք աշխատում են սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում։

Նախկինում կրկնակի շահագործված ու ճնշված (ընտանիքում և հասարակական կյանքում) կինը, նախկին խոհարարուհին, կամ տնտեսուհին, բատրակուհին, այժմ մասնակցում է իր ազատ ու երջանիկ երկրի կառավարման գործին։ ՍՍՌՄ-ի և միութենական, ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատների թվում ունենք 1625 կին, տեղական սովետներում—422 հազար 279 կին կամ բոլոր դեպուտատների 33 տոկոսը։

Այդպես չէ կապիտալիստական աշխար-

հում։ Բոլոր, նույնիսկ այսպես կոչված դեմոկրատական-բուրժուական երկրներում, կինը ոչ միայն պետության կառավարման օրգաններում ընտրվելու իրավունքից է զրկված, այլև ընտրելու իրավունքից։

Սովետական Միության բարձրագույն դպրոցներում սովորող ուսանողների 43 տոկոսը կանայք են։ Այդ թիվը երկու անգամ բարձր է 22 կապիտալիստական երկրների ԲՈՒՀ-երում սովորող կանանց թվից միասին վերցրած։ Սովետական երկրի գիտական աշխատողների 37 տոկոսը կանայք են։ Այն ժամանակ, երբ բոլոր բուրժուական երկրների կին-ինժեներների ընդհանուր թիվը չի անցնում 10.000-ից, մեզ մոտ աշխատում են ավելի քան 100 հազար կին-ինժեներներ։ Սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում ունենք աշխատանքի հերոսուհիներ, մեր հայրենիքին նվիրված, ճանաչված մարդիկ, կոլխոզային դաշտերի անվանի ստախանովականներ, շքանշանակիրներ—Մարիա Դեմչենկոն, Պաշա Անգելինան, Մարիա Իգնատենկոն, Պաշա Կովարդակը հայտնի են ոչ միայն Սովետական Միության մեջ, այլ և նրա սահմաններից դուրս։ Քիչ չէ



անվանի ստախանովականների թիվը նաև Հայաստանի կոլխոզային դաշտերում։ Նրանց թվում կարելի է հիշատակել Եղովան գյուղի կոլխոզի օղակավարուհի, Լենինի շքանշանակիր Վարդուշ Մելքոնյանին, Կալինինոյի շրջանի Կագանովիչի անվան կոլխոզի կովկիթ, Լենինի շքանշանակիր Նովոսելցևա Տատիանային, Ղամարլվի Թոխանշալու գյուղի կոլխոզի օղակավարուհի շքանշանակիր Սիրանուշ Գևորգյանին և ուրիշներին։ Տասնյակ հազարների է հասնում արդյունաբերության մեջ ստախանովական, հարվածային աշխատող, բարձր արտադրողականություն տվող կանանց թիվը։

Սովետական երկրում ապահովված է կնոջ համար երջանիկ մայրությունը։ Սովետական պետությունը 1936 թվի հունիսից մինչև 1-ը դեկտ. 1939 թ. բազմազավակ մայրերին վճարել է 3 միլիարդ 184 միլիոն ռուբլի, երեխաների պաշտպանության ու խնամքի համար։

Ստալինյան Կոնստիտուցիայի 123-ՐԴ ՀՈԴՎԱԾՈՒՄ ասված է. «Քաղաքացիների իրավահավասարությունը տնտեսական-քա-

ղախական կյանքի բոլոր բնագավառներում, անկախ ազգությունից և ռասայից, անխախտ օրենք է հանդիսանում»:

*Բոլշևիկների պարտիան, նրա հանճարեղ ղեկավար ընկեր Ստալինը հետևողական ու ամենօրյա հոգատարությամբ նախկին ցարական գաղութների մի քանի տասնյակ ազգություններին ոչ միայն լիակատար ազգային ինքնորոշման իրավունք և հնարավորություն տվեցին, այլև լայն միջոցներ ստեղծեցին նրանց կուլտուրական, քաղաքական ու տնտեսական աճման համար։*

*ՍՍՌՄ-ի ամեն մի ռեսպուբլիկայի ներկա վիճակը պարզ և անժխտելի ապացույց է լենինյան-ստալինյան այդ ազգային քաղաքականության հաղթանակի։ Սովետական իշխանության տարիների ընթացքում բոլոր միութենական ռեսպուբլիկաներում ստեղծվել է խոշոր արդյունաբերություն.— Ուզբեկստանում կառուցված է հսկայական տեքստիլ կոմբինատ, Ղազախստանը դարձել է Միութենական գունավոր մետաղների հանույթի խոշոր կենտրոն— Բալխաշ լճի ափին կառուցված է Բալխաշյան պղնձաձուլման գիգանտ կոմբինատը, Թուրքմենիայում, այդ նախկին ծայրահեղ հետամնաց տիպիկ գաղութային երկրում,*



*որտեղ չկար ոչ մի արդյունաբերություն, այժմ կառուցված են շոգեքարշերի նորոգման, մեխանիկական, գործվածքային խոշոր գործարաններ։*

*Մեկ ամիս առաջ միայն, մենք տոնեցինք Սովետական Հայաստանի քսանամյակը։ Մեր աշխատավորությունը բերկրանքով լի դեպի բոլշևիկյան պարտիան, ամփոփեց իր նվաճումները, անցած քսան տարվա ընթացքում։ Հայաստանն այժմ ունի զարգացող արդյունաբերություն. միայն ստալինյան երկու հնգամյակների ընթացքում կառուցվել են 43 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, այդ թվում խոշոր էլեկտրոկայաններ, ինչպիսիք են՝ Քանաքեռգէսը, Ձորագէսը, Լենգէսը, քիմիական արդյունաբերության մի շարք գործարաններ, խոշոր սննդի արդյունաբերություն, ինչպիսին է Լենինականի Մսի կոմբինատը, Երևանի Կոնսերվի գործարանը և շատ ուրիշները, ծխախոտի, ձեթ-օճառ, հրուշակեղենի և այլ գործարաններ։*

*Հայաստանը դարձել է տեխնիկական կուլտուրաների, պտղաբուծության զարգացման գծով միութենական խոշոր ռեսպուբ-*

լիկաներից մեկը։ Սովետական Հայաստանի ժողովուրդն օգտագործելով անցյալի կուլտուրական հարուստ ժառանգությունը, քըսան տարիների ընթացքում ստեղծել է նոր, բարձր, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա։

Տնտեսական զարգացման հետ միասին աճել է նաև ազգային ռեսպուբլիկաների ազգաբնակչության կուլտուրական մակարդակը։ Գրագիտության աճը 9-ից բարձր տարիք ունեցող քաղաքացիների մեջ մի շարք միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաներում ավելի բարձր է, քան միջին աճը ՍՍՌՄ-ում (31,10 տոկոս), 1926—1939 թ. թ. համեմատությամբ։ Այսպես օրինակ, Տաջիկական ՍՍՌ-ում գրագիտության աճը նույն տարիներին կազմում է 68 տոկոս, Ուզբեկական ՍՍՌ-ում՝ 67,2 տոկոս, Թուրքմենական ՍՍՌ-ում՝ 54, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 54,9, Ղազախական ՍՍՌ-ում՝ 52,4 և այլն։ Այն ժամանակ, երբ մեկ հազար մարդուն ընկնող սովորողների թիվը ՍՍՌՄ-ում կազմում է 223 հոգի և դա համարվում է ամենաբարձր թիվն աշխարհում, 10 միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաներում հազար մարդուն ընկնող սովորողների թիվը շատ ավելի մեծ է, քան միջինը Սովետական



Միությունում։ Այսպես օրինակ Տաջիկական ՍՍՌ-ում մեկ հազար մարդուն ընկնում է 394 սովորող, Ուզբեկական ՍՍՌ-ում՝ 330 սովորող, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 303 սովորող, Թուրքմենական ՍՍՌ-ում՝ 291, Հայկական ՍՍՌ-ում՝ 273 և այլն։

ՍՍՌՄ բոլոր ազգությունները ունեն իրենց ինտելիգենցիան—ինժեներներ, բժիշկներ, ագրոնոմներ, արվեստի և գիտության գործիչներ։ ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդներն ունեն իրենց նոր զարգացող, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ ՍՍՌՄ-ը բազմազգ ժողովուրդների երկիր է, որտեղ ժողովուրդների քաղաքական-բարոյական միասնության ամրությունն ապահովված է լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության անշեղ կիրառումով։ ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդները տոգորված են նույն զգացմունքով— սոցիալիստական մեծ հայրենիքի պաշտպանության, հայրենասիրության ըզգացմունքով։

Ստալինյան Կոնստիտուցիայի 131-ՐԴ ՀՈԴՎԱԾՈՒՄ ասված է.

«ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացի պարտավոր է պահպանել ու ամրացնել հանրային, սոցիալիստական սեփականությունը

որպես սովետական կարգերի սրբազան, անձեռնմխելի հիմք...»:

Այդ նշանակում է ոչ միայն պաշտպանել մեր հասարակության, սովետական իշխանության հարստություններն ու ողջ միջոցները, այլ անխոնջ կերպով զարգացնել այն՝ «ազնվորեն վերաբերվելով դեպի հասարակական պարտքը— աշխատանքը»: Պայքարել աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատանքի որակի և քանակի, սոցիալիստական առատության համար, մեր երկրի պաշտպանունակության էլ ավելի ամրապնդման համար: Այժմ մեր աշխատավորության ողջ ուշադրությունն ու ուժերը պետք է ուղղված լինեն մեր հայրենիքի հարստությունների, նրա արտադրողական ուժերի կրկնապատկման գործին:

ՍՍՌՄ-ի երկրորդ հնգամյակի ընթացքում ստացած 51 միլիարդ ռուբլի արտադրանքի աճից՝ աշխատանքի արտադրողականության հաշվին ընկնում է 30,5 միլիարդ ռուբլի. երրորդ հնգամյակի պլանով նախատեսվում է արդյունաբերական արտադրանքի աճ 88,5 միլիարդ ռուբլի, այդ աճից՝ 62 միլիարդ ռուբլի արտադրանք պետք է ստացվի միայն աշխատանքի ար-



տադրողականության բարձրացման հաշվին: Այլ կերպ ասած՝ երրորդ հնգամյակում նախատեսված ողջ արտադրանքի աճի 70 տոկոսը պետք է ստացվի բացառապես արտադրողականության բարձրացման հաշվին: Առանց արտադրողականության այսպիսի աճի, դժվար է կատարել երրորդ հնգամյակի հիմնական խնդիրը— անցնել գլխավոր կապիտալիստական երկրներից նաև տնտեսապես: «Աշխատանքի արտադրողականությունը,— ասել է Լենինը,— դա վերջին հաշվով ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար... Կոմունիզմը կամավոր, գիտակից, համախմբված, առաջավոր տեխնիկան օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է՝ կապիտալիստական արտադրողականության դեմ»:

Ստալինյան երկու հնգամյակների ընթացքում սովետական երկրում ստեղծված են բոլոր պայմաններն աշխատանքի բարձր արտադրողականություն ստեղծելու համար: Մենք ունենք արդեն ծանր արդյունաբերության խոշոր բազա—երկաթ, պղինձ, խոշոր դազգահաշինարարություն, մեքենաշինարարություն, մեծ քանակությամբ տեխնիկա-

կան կադրեր։ Ահա թե ինչո՞ւ արդյունաբերության և գյուղատնտեսության պլանների կատարման և գերակատարման գործը ՍՍՌՄ ողջ աշխատավորության մտահոգության առարկան է։ Ահա թե ինչո՞ւ նրանք ցուցաբերում են հերոսական աշխատանքի օրինակներ։

Այդ օրինակներից մեկը հանդիսանում է Հայաստանի Ալավերդու և Ղափանի պղնձահանքերում կրիվոյ-ռոգյան անվանի հորատող Սեմիվոլոսի մեթոդի լայն մասսայականացումը։ Բազմահանքախորշային սպասարկման այդ մեթոդով աշխատելով Շամլուղի հորատող-ստախանովական Հովսեփ Մամյանն իր արտադրական պլանները այժմ կատարում է 700—750%-ով, Արեստի Բուդաղովը՝ 750%-ով, Յակով Յանգորուզովը 750—760%-ով։ Ղափանը հետ չի մնում Շամլուղից։ Ղափանի անվանի հորատող Հմայակ Սարգսյանը դեկտեմբերի 19-ին իր արտադրական պլանը կատարեց 1744%-ով, հորատող-ստախանովական Միշա Ավանեսյանն իր պլանները կատարում է 760%-ով և այլն։

Տալով արտադրողականության և աշխատանքային դիսցիպլինայի պաշտպանման փայլուն օրինակներ Սովետական Միության հարյուր-հազարավոր բանվորները բոլշևիկ-



յան պարտիայի գլխավորությամբ պայքարում են Գերագույն Սովետի հունիսի 26-ի Հրամանագրի անշեղ իրականացման համար, լոդրերի, չվողների և գործալիքների դեմ։

Կոնստիտուցիայի 11-ՐԴ ԳԼՈՒԽԸ նվիրված է ՍՍՌՄ ընտրական սիստեմին, որտեղ ամփոփված են սոցիալիզմի խսկական հետեվողական դեմոկրատիզմի սկզբունքները՝ երկրի պետական կառավարման օրգանների և ՍՍՌՄ-ի քաղաքական հիմք հանդիսացող աշխատավորների դեպուտատների սովետների ընտրություններում։

Այդ գլխում ասված է.—

«Սովետական դեպուտատների ընտրությունները կատարում են ընտրողները՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ»։

Ընտրելու իրավունք ունեն բոլոր քաղաքացիները, 18 տարեկանից սկսած, բացի խելագարներից և դատարանի կողմից ընտրական իրավունքից զրկվածներից։ Այս սկզբունքի հիման վրա էլ կազմված է սովետական ընտրական կանոնադրությունը, որն ապահովում է Կոնստիտուցիայի այդ պահանջի լրիվ և ճիշտ կիրառումը կյանքում։

Բուրժուական երկրներում ընտրական օ-

րենքի հիմնական նպատակն է հանդիսանում ապահովել տիրող դասակարգի— բուրժուազիայի գերիշխող դերը ընտրություններում, հետ մղել աշխատավորական մասսաներին, արգելել նրանց մասնակցությունն ընտրություններին. այդ իրականացվում է ընտրական կարգում զանազան արգելակներ, սահմանափակումներ մտցնելով։ Միացյալ Նահանգներում, Ֆրանսիայում, Անգլիայում, Ճապոնիայում, Ֆինլանդիայում և բոլոր բուրժուական երկրներում ընտրությունների համար սահմանվում է բարձր տարիքային ցենզ—ձայնի իրավունք են ստանում 21—25 տարեկանից։ Մի շարք երկրներում բանակում գտնվող երիտասարդությունը զրկվում է ձայնի իրավունքից, որի միջոցով բուրժուազիան զրկում է հազարավոր աշխատավոր երիտասարդներին ընտրություններին մասնակցելուց։ Որոշ կապիտալիստական երկրներում, ինչպես, օրինակ, Ֆրանսիայում, ԱՄՆ-ում, Ճապոնիայում գոյություն ունի նստակեցության ցենզ։ Այն քաղաքացիները, որոնք վեց ամսից, մեկ տարուց պակաս ժամանակ են ապրել տվյալ վայրում, զրկվում են ընտրելու իրավունքից։ Այդ օրենքն ուղղված է միլիոնավոր աշխատավորների դեմ, որովհետև նստակյաց չեն կարող լինել հազարավոր բանվորներ և գյու-



ղացիներ, որոնք աշխատանք, ապաստան, հաց փնտռելու համար ստիպված են քաղաքից-քաղաք, գյուղից-գյուղ թափառել։

Ֆրանսիայում, Իտալիայում, Ճապոնիայում, Ռումինիայում և ուրիշ երկրներում, կանայք զրկված են ընտրելու իրավունքից։

«Կապիտալիստական պետություններում քաղաքական իրավունքներից զրկված են բոլոր ճնշված ազգերը և ռասաները։ Միացյալ Նահանգներում ընտրական իրավունքներից չեն օգտվում միլիոնավոր նեգրեր, որոնք չեն տիրապետում անգլերեն լեզվին։ Անգլիայի, Ֆրանսիայի և ուրիշ երկրների բուրժուազիան զրկում է ընտրություններին մասնակցելու իրավունքից իր գաղութների միլիոնավոր բնակչությանը։ Տեղական բնակիչները հաշվվում են ոչ թե քաղաքացիներ, այլ հպատակներ»։ («Блокнот Агитатора» ռուսերեն, 1940 թ. № 128)։

Ամերիկայում ընտրելու իրավունք ստանալու համար, քաղաքացիները պարտավոր են վճարել հատուկ հարկ, Անգլիայում բանկիրները, գործարանատերերը և խոշոր սեփականատերերն ստանում են երկու ձայն— ըստ ապրելու վայրի և որտեղ գտնվում է նրանց սեփական կայքը։

ՍՍՌՄ-ում պետական կառավարման օրգանների՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի, ռես-

պուբլիկաների Գերագույն Սովետների և տեղական սովետների ընտրությունները, որոնց մասնակցեց ողջ ազգաբնակչությունը, բանվորների, ծառայողների և գյուղացիների համերաշխ համագործակցությամբ և փոխադարձ օգնությամբ, ցույց տվին, որ միայն Սովետական ընտրական սիստեմն է իրոք ժողովրդական և մինչև վերջը դեմոկրատական։

1939 թ. դեկտեմբերին կայացած ՍՍՌՄ տեղական սովետների ընտրությանը մասնակցեց ընտրողների 99,21 տոկոսը։ Տեղական սովետներում ընտրվեցին 1,281,008 մարդ, որից 32,96 տոկոսը կանայք։ Դեպուտատների 31,41 տոկոսը կոմունիստներ են, 68,59 տոկոսն անպարտիականներ։

Ստալինյան Կոնստիտուցիան հանդիսանում է հաղթանակած սոցիալիզմի երկրի Կոնստիտուցիան։ Նա իրենից ներկայացնում է մեր անցած ճանապարհի պայքարի ու հաղթանակների հանրագումարը։ Ամեն մի ագիտատորի և պրոպագանդիստի պարտականությունն է՝ հասցնել լայն աշխատավորական մասսաներին Ստալինյան Կոնստիտուցիայի հիմունքները, կապելով այն մեր նվաճումների հետ սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում։

---



# ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ „ԾՆՈՒՆԴ"-Ի ՄԱՍԻՆ

Ամեն տարի հավատացյալ քրիստոնյաները տոնում են «Քրիստոսի ծնունդը»։ Դա քրիստոնյաների մոտ հեքիաթային «փրկիչ» Հիսուս Քրիստոսի պաշտամունքին նվիրված ամենագլխավոր տոներից մեկն է։ Դեպքը, որի հիշատակի համար հավատացյալները «ծննդյան» տոն են կատարում, իրականում երբեք գոյություն չի ունեցել։ Մարքսիստական պատմական գիտությամբ անհերքելիորեն ապացուցված է, որ Քրիստոսը, որը եկեղեցական ուսմունքով եղել է իբր թե միաժամանակ և՛ աստված, և՛ մարդ, աստվածային «փրկիչ»-ն ու քրիստոնեական կրոնի հիմնադիրը, երբեք գոյություն չի ունեցել և, հետևաբար, չի էլ ծնվել։

Այդպիսի եզրակացության ստիպված էին հանգել և բուրժուական գիտնականները (Բրունո Բաուեր, Դրևս, Նեմոևսկին և ուրիշները), երբ մանրազնին կերպով ուսումնասիրեցին կրոնի պատմության, մասնավորապես վաղ քրիստոնեության դարաշրջանի, գրական և ուրիշ հուշարձանները։

Գիտությունն ամբողջապես մերկացրել է և ապացուցել Քրիստոսի մասին հորինված բոլոր պատմությունների կեղծությունը, այն մասին, թե երկու հազար տարի սրանից առաջ իբր հրաշքով ծնվել է նա Պաղեստինում, եբրայական (հրեական) ժողովրդի միջավայրում, նոր կրոնական ուսմունք է այնտեղ քարոզել, բազմաթիվ հրաշքներ է կատարել, մարդկանց մեղքերի համար կամավոր կերպով մեռել է, մահից հետո հարություն է առել և երկինք համբարձվել։

Այս ամենն սկզբից մինչև վերջ հերյուրանք են, կրոնական հեքիաթներ։

## Ի՞ՆՉ Է ՑՈՒՅՑ ՏԱԼԻՍ «ՍՈՒՐԲ» ԳՐՔԵՐԻ ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒՄԸ

Քրիստոսի մասին ունեցած մեր տեղեկությունների գլխավոր աղբյուրը ծառայում է վաղ-քրիստոնեական գրականությունը։ Այդ գրականության, մեզ հասած հուշարձանները



րից, ամենից հնագույնը հանդիսանում է «Հայտնությունը»— «Հայտնություն Հովհաննու»։

Մեր թվագրությունից առաջ՝ 69—70 թվականների մոտ, անհայտ հեղինակի կողմից գրված այդ գրքում Քրիստոսը պատկերվում է շատ զանազան ֆանտաստիկ ձևերով. մերթ, որպես երկնային նախաքահանա՝ հին եբրայական քուրմերի և թագավորների հագուստով, մերթ, որպես երկնային գառնուկ յոթ աչքերով ու եղջյուրներով, մերթ, որպես երկնքում գտնվող աստծո որդի, մերթ, որպես երկնային հաղթական զորավար։ «Հայտնության» ժամանակների այդ հին քրիստոնյաների համար՝ Քրիստոսը չի եղել իրական մարդ, պատմական գործիչ։ Նրանք Քրիստոսի մեջ տեսել են միայն հեքիաթային, աստվածային էակը, անգամ երկիրը չիջած «երկնաբնակ»-ը։

Ըստ գրման ժամանակի, վաղ-քրիստոնեական գրականության հետևյալ հուշարձանը հանդիսանում է, «Հայտնություն»-ից 20—30 տարի հետո երևան եկած, «Թղթերը Պողոսի»-ն։ Եկեղեցականներն այդ «Թղթերը»-ի հեղինակությունը վերագրում են հեքիաթային Պողոս առաքյալին, իսկ իրականում այդ երկը նույնպես, ինչպես և

«Հայտնություն»-ը, գրված է եղել անհայտ հեղինակի կողմից։

«Գործք Պողոսի»-ում պատկերվում է քրիստոնեական կրոնի զարգացման նոր էտապը։ Սրա մեջ Քրիստոսն այլ տեսք ունի, քան «Հայտնության» մեջ։ Նա հռչակվում է, որպես աստվածային «փրկիչ» և աստվածորդի, որը մի ժամանակ երկնքից երկիր է իջել, ծնվել է երկրային կնոջից, մահվան է ենթարկվել խաչի վրա, հարություն է առել և համբարձվել երկինք։

Բայց ո՞րտեղ, ե՞րբ և ի՞նչպես է տեղի ունեցել այս ամենը, «Գործք»-ը չի ասում։ Քրիստոսի երկրային կյանքը նրա մեջ սավառնում է ժամանակից և տարածությունից դուրս, պատմական կոնկրետ իրադրությունից դուրս։

Այսպիսով, «Գործք»-ի գրման տարիներին, այսինքն՝ առաջին դարի վերջում, քրիստոնեականները Քրիստոսի մեջ առաջվա պես միայն հեքիաթային աստվածությունը— երեվակայական աստվածամարդուն— տեսնելով, արդեն սկսել էին նրան մարդկային գծերով օժտել և ստեղծել նրա երկրային կյանքի ու գործունեության պատմությունը։

Վաղ-քրիստոնեական երկերի հետևյալ



խումբը հանդիսանում է երկրորդ և երրորդ դարերի ընթացքում ստեղծված ավետարանները։

Այդ ժամանակաշրջանում գրված են եղել մի քանի տասնյակ ավետարաններ, որոնք զանազան կերպ են պատկերացրել Քրիստոսին և նրա կյանքը։

Վախենալով այն բանից, և ոչ առանց հիմքի, որ այդ բազմաթիվ ավետարաններում թագավորող տարաձայնությունը և խառնաշփոթությունը կարող են հավատացյալների մեջ կասկածանք զարթնեցնել հենց իր՝ քրիստոնեական դավանաբանության մասին, քրիստոնեական եկեղեցու գլխավորները 325 թվին, առաջին տիեզերական ժողովին (вселенский собор) ավետարանական գրականության «զտում» կատարեցին. բոլոր ավետարաններից 4-ը ջոկվեցին, որոնք և հայտարարվեցին կանոնական, այսինքն՝ անսխալ, «աստվածաշնչային»։ Դրանց վերագրեցին հեքիաթային առաքյալներ՝ Հիսուսի աշակերտներ՝ Մատթեոսին, Մարկոսին, Ղուկասին և Հովհաննուն, չնայած, որ նրանց իսկական հեղինակներն անհայտ են։

Այս ավետարանները, որոնք եկեղեցականների և տերտերացած բուրժուական պատմագետների կողմից հրամցվում են,

*որպես Քրիստոսի իրական, երկրային կյանքի վկայություն, համատարած կերպով բաղկացած են ամենաանհեթեթ հերյուրանքներից, կրոնական հեքիաթ— առասպելներից. նրանք ամեն քայլափոխին հակասում են մեկը-մյուսին, իրենք-իրենց և պատմական փաստերին։*

*Իրապես, ի՞նչ են նկարագրում ավետարանները. գլխավորապես, բնության օրենքներին և առողջ դատողությանը հակասող զանազան «հրաշքներ»։ Թվենք դրանցից մի քանիսը միայն. կույսի անարատ հղիացումը «սուրբ հոգուց» և նրա ծնելը, հրաշային աստղի հայտնվելը երկնքում, հրեշտակների երևան գալը, Քրիստոսի քայլելը ջրերի վրայով, նրա հարությունն առնելը և այլն, և այլն։ Այդպիսի «հրաշքներին» մարդիկ կարող էին հավատալ միայն այն ժամանակ, երբ բնության և մարդկային հասարակության մասին ունեցած գիտական գիտելիքները գտնվում էին դեռ շատ ցածր մակարդակի վրա, իսկ ժողովրդական լայն մասսաներին այդպիսիք ամենևին արդեն անհայտ էին։*

*Քրիստոսի երկրային կյանքի հանգամանքների ավետարանական նկարագրությունը, հանգամանքներ, որոնց մեջ է իբր*



*թե ընթացել նրա գործունեությունը, լի է հակասություններով ու կոպիտ սխալներով, որոնք ի դերև են հանում ավետարանների հեղինակների տգիտությունը պատմության, աշխարհագրության ասպարեզներում և այն ժամանակվա էկոնոմիկայի մեջ, որի մասին նրանք գրել են։*

*Ավետարաններում բացակայում է համաձայնությունն անգամ այնպիսի պարզ հարցում, ինչպիսին է Քրիստոսի ծննդյան ժամանակը։ Օրինակ, Մատթեոսի ավետարանում ասվում է, որ իբր թե Քրիստոսը ծնվել է հրեական (եբրայական) Հերովդես թագավորի կառավարման վերջին տարիներին (որն իրականում մահացել է Քրիստոսի այդ երևակայական ծննդից 4 տարի առաջ)։ Ղուկասը Քրիստոսի ծնունդը վերագրում է, Պաղեստինում, հռոմեական աստիճանավոր Քըվիրինոսի կողմից կատարված ազգաբնակչության ընդհանուր մարդահամարի ժամանակներին, որն իրականում կատարվել էր Հերովդեսի մահվանից 10 տարի հետո միայն։ Մատթեոսի ասելով, մանուկ Քրիստոսին հալածել է Հերովդեսը, մտադրություն ունենալով նրան սպանել, որի պատճառով Քրիստոսի ծնողները ստիպված են եղել նրա հետ Եգիպտոս փախչել։ Ղուկասի ասելով մանուկ*

Քրիստոսը և ոչ մեկի կողմից հալածանքի չի ենթարկվել և իր մանկությունը մեծ անդորրությամբ իր ծնողների տանն է անց կացրել։ Այսքանը դեռ նվազագույնն է այն բազմաթիվ հակասությունների, որոնք երփներանգում են ավետարանները։

Պատմական փաստերի տեսանկյունից, որպես ավետարանական պատմումների բազմաթիվ անհեթեթությունների մի օրինակ, կարելի է բերել Քրիստոսի վրա կատարված դատի մասին գոյություն ունեցող պատմությունը։ Ավետարանների խոսքերով, իբր թե Քրիստոսին դատել է և մահվան պատժել հրեաների գերագույն դատարանը— ծերակույտը (սինեդրիոն), հռոմեական Պիղատոս փոխարքայի օրոք։

Սակայն այդ բանը չէր կարող տեղի ունենալ, քանի որ այդ տարիներին հռոմեացիք ծերակույտին արդեն զրկել էին քրեական գործերում դատական իրավունքներ ունենալուց, ուստի և ծերակույտը չէր կարող և ոչ ոքի մահվան պատժի դատապարտել։

Առհասարակ, ավետարաններում գտնվող անհեթեթություններն անթիվ անհամար են։ Ավետարանիչները հիշատակում են քաղաքներ և գյուղաքաղաքներ, որոնք առաջին և երկրորդ դարի Հրեաստանում ամենևին գո-



յություն չեն ունեցել—Նազարեթ, Կափառնայում, Խորազին, Վիֆսայիդա, Վիֆֆագիա և ուրիշները։ Ընտանի կենդանիներից, ավետարանիչները հիշատակում են խոզերի հսկայական բոլուկները, որոնց երբայեցիները (հրեաներն) ամենևին չէին բազմացնում։ Նրանք խոսում են գայլերի մասին, որոնք այն տեղերում ամենևին գոյություն չեն ունեցել, իսկ միևնույն ժամանակ նրանք չգիտեն այնտեղ տարածված կենդանիներից՝ առյուծին, հովազին, շնագայլին, բորենուն և ուրիշներին։ Բույսերը որոնցից Պաղեստինի համար ամենաբնորոշըն է՝ ձիթենին, նշենին, նռենին, արմավենին— ավետարաններում ամենևին չեն հիշատակվում, իսկ մանանեխը, մի բույս, որն ազգակից է կաղամբին, ավետարանների տգետ հեղինակների կողմից վերածված է հսկայական, ճյուղատարած ծառի։

Այսպիսով, Քրիստոսի մասին, որպես պատմական անձնավորության և այն պատմական իրադրության մասին, որի մեջ իբր թե ապրել է նա, ավետարանները վստահության արժանի և ոչ մի տեղեկություն չեն տալիս, ճիշտ այնպես, ինչպես և չեն տալիս վերևում հիշատակված «Հայտնություն»-ը և «Գրություն»-ը։

## ԻՆՉՈ՞Ւ ՀՆԱԴԱՐՅԱՆ ԳՐՈՂՆԵՐԸ ՔՐԻՍՏՈՍԻ ՄԱՍԻՆ ՉԵՆ ՀԻՇԱՏԱԿՈՒՄ

Բայց գո՞ւցե կան ուրիշ, ավելի հիմնավոր վկայություններ Քրիստոսի պատմական գոյության մասին։ Բանից դուրս է գալիս, որ այդպիսիք չկան։ Անգամ փոքրագույն ցուցմունքներ Քրիստոսի, որպես իրականում գոյություն ունեցած անձնավորության մասին, չեն տալիս վաղ-քրիստոնեականության ո՛չ հնագիտական և ո՛չ էլ ուրիշ հուշարձանները։ Նրա մասին չեն հիշատակում ո՛չ սեպաձև արձանագրությունները, ո՛չ կատակոմբների (ստորերկյա շիրիմների) պատերի, առօրյա կենցաղի առարկաների և այլնի վրա եղած մակագրությունները։

Հիշատակությունները Քրիստոսի մասին ամբողջապես բացակայում են նույնպես և առաջին ու երկրորդ դարերի գրողների, պատմագիրների, փիլիսոփաների գրվածքներում։ Իսկ այդ գրողների թիվը մեծ է։ Հենց ճիշտ այդ տարիներին ապրել են հունական և հռոմեական խոշորագույն պատմագիրներ՝ Պլուտարքոսը, Տացիտը, Պլինիոս-կրտսերը և Սվետոնիոսը, պոետներ՝ Պերսիոսը, Լուկիանոսը, Մարկելիանոսը, Յուվենալը,



փիլիսոփա՝ Սենեկան, եբրայական գրողներ և պատմագիրներ՝ Փիլոնը, Հովսեփ Ֆլավիոսը և Յուստը՝ Տիբերիադա քաղաքից։

Նրանք իրենց գրվածքներում, իր ժամանակի խոշոր և նույնիսկ մանր, շատ գործիչների անուններ են հիշատակում, մանրակրկիտ կերպով նկարագրում են նրանց կյանքից զանազան դեպքեր, նշում են նրանց գործունեության տեղը և ժամանակը։ Պարզ է, որ նրանք չէին կարող չիմանալ այնպիսի խոշոր գործչի մասին, ինչպիսին Քրիստոսն է, եթե միայն նա գոյություն ունենար։

Կարո՞ղ էին չհիշատակել Քրիստոսի մասին այնպիսի նշանավոր եբրայական փիլիսոփաներ, պատմագիրներ և իրենց ժամանակի հասարակական գործիչներ, ինչպիսիք էին Հովսեփ Ֆլավիոսը, Փիլոնը, որոնք ամենաեռանդուն մասնակցությունն են ունեցել իրենց ժողովրդի քաղաքական և կրոնական կյանքում և որոնք թողել են այն ժամանակ եբրայեցիներին հետաքրքրող ու հուզող բոլոր դեպքերի և դեմքերի մանրամասն նկարագրությունը։ Պարզ է, որ բոլոր այս գրողները պետք է որ գրեին Քրիստոսի մասին, եթե իրապես նա ապրեր նրանց ժամանակում, դուրս գար իր քարոզով և, առհասարակ, աներ որևէ բան այն ամենից, ինչը

վերագրում են նրան ավետարաններն ու եկեղեցին։ Հենց ինքը, այն փաստը, որ նրանք բոլորը Քրիստոսի մասին ոչինչ չեն հաղորդում, արդեն համոզեցուցիչ ապացույց է ծառայում այն բանի, որ նա գոյություն չի ունեցել։

Քրիստոնեական եկեղեցականները դեռ հնում հաշվի առան այս հանգամանքի, իրենց համար վնասակար, նշանակությունը։ Այդ պատճառով նրանք դեռ 4-րդ, 5-րդ դարերում կեղծումներ կատարեցին Տացիտի, Հովսեփ Ֆլավիոսի և մի շարք այլ ոչ-քրիստոնյա գրողների գրվածքներում, ավելացնելով նրանց մեջ տեղեկություններ Քրիստոսի մասին։

Սակայն, պատմական գիտությունը մերկացրեց այդ կեղծությունը։ Ավելի անճոռնի կեղծումներ դուրս եկան, այսպես կոչված, «նոր տեղեկությունները» Քրիստոսի մասին, որոնք իբր թե ոչ-շատ ժամանակ սրանից առաջ հայտնաբերվել են Տիբեթում, Եգիպտոսում և այլ տեղերում։ Այդ կեղծումներից մեկը, օրինակ, հանդիսանում է «Տիբեթական ավետարանը» որն իբր թե գտնվել է ինչ-որ սպայի կողմից (իսկ իրականում տերտերների կողմից թխած) և հրատարակվել է անցյալ դարի վերջերին։ Այդ նոր կեղ-



ծությունն իսկույն ևեթ մերկացվեց և դուրս եկավ այնքան կոպիտ, որ անգամ եկեղեցականները երբեք նրան չեն վկայակոչում։

Ի մի բերելով վերոգրյալները, մենք տեսնում ենք, որ Հիսուս Քրիստոսն ի դեմս եկեղեցականների և տերտերացած բուրժուական գիտնականների կեղծ պնդումների, ոչ-պատմական, առասպելական անձնավորություն է։ Երկրի վրա նա երբեք չի ապրել, այլ ապրել է միայն հավատացյալների երևակայության մեջ։

Քրիստոսն իրական մարդ չէ, պատմական, հասարակական գործիչ չէ, որին նրա երկրպագուներն օժտել են աստվածային, գերբնական հատկություններով, այլ ընդհակառակը, երևակայական աստվածություն է, կրոնական ֆանտազիայի արգասիք, հեքիաթային կերպար, որին օժտել են երկրային մարդու գծերով։

## ՈՐՏԵՂԻՑ ՍԿՍԵՑԻՆ ԱՌԱՋԱՆԱԼ ՊԱՏՄՈՒՄՆԵՐԸ ՔՐԻՍՏՈՍԻ ՄԱՍԻՆ

Ավետարանական պատմությունները Քրիստոսի ծննդի և նրա երկրային կյանքի այլ դեպքերի մասին, հանդիսանում են աստվածների, հերոսների և այլնի մասին զանազան հին հեթանոսական և հրեական

պատմումների քրիստոնեական վերամըշակումները։ Այսպես օրինակ․ հին եգիպտացիներն ունեին մի դավանանք, որի համաձայն նրանց հողի և բերքատվության աստվածուհի կույս Իզիդան հրաշքով ծնել է իր որդի՝ Հոր (Гор) «փրկչին», որի հետ միասին նա թշնամիների կողմից ենթարկվել է հալածանքի և ստիպված է եղել ազատվել փախուստով։

Բաբելոնական առասպելները պատմում են հեքիաթային Հիլգամեշ հերոսի մասին, որը նույնպես իբր թե անարատ կերպով ծնվել է կույսից և մեծ հրաշքով փրկվել է թագավորի հալածանքներից։ Ասորեստանցիք և բաբելոնցիք հավատում էին, որ իրենց աստված՝ Թամմուզ «փրկիչը», բարձրագույն աստվածության մայր կույսից էր հրաշքով ծնվել։ Հին պարսիկներն իրենց «փրկիչ» համարում էին արևային Միհր աստծուն, որը նույնպես հրաշքով էր ծնվել երկրի կույս աստվածուհի Անահիտի կողմից՝ քարանձավում։ Նրան, առաջինը եկան երկրպագության հարևան դաշտի հովիվները։

Փյունիկիացոց Ատտիս «փրկիչը», համաձայն կրոնական առասպելի, նույնպես ծնվել է կույս-մայր Նանայից։ Նույնպիսի պատմումներ կային և հին հնդիկների մոտ, որոնք



ստեղծել էին Բուդդայի պաշտամունքը, որը նույնպես, իբր թե ծնվել էր կույս Մայ աստվածուհուց։

Այս բոլոր առասպելների արձագանքները մենք նկատում ենք ավետարանական «ծընընդյան» պատմումներում։ Այդ պատմումները միահյուսվում են և հին եբրայական առասպելների հետ, որոնք ստեղծվել են քրիստոնեության հայտնությունից դեռ շատ տարիներ առաջ։ Օրինակ․ եբրայական ավետարանում պատմվում է, որ իբր թե հեքիաթային, եբրայական օրենսդիր Մովսեսին մանուկ ժամանակ եգիպտական թագավորի կողմից վտանգ էր սպառնում, սակայն նա հրաշքով փրկվեց։

Մի այլ, հին եբրայական պատմումի մեջ, պատմվում է Նիմվրոդ թագավորի մասին, որ իբր թե նա մի անգամ երկնքի վրա մի աստղ տեսավ, որը երեխայի— ժողովրդի մեծ նախահոր, ծնունդն էր ազդարարում․ այն ժամանակ թագավորը հրամայեց իր տերության բոլոր նորածիններին սպանել տալ, սակայն այդ հրաշքային մանկան մայրը կարողացավ ծնել նրան և փախցնելով՝ փրկել մահից։ Այդ մանուկը՝ հեքիաթային Աբրահամ հայրապետն էր։ Եբրայեցիների մոտ գոյություն ուներ դավանանք նաև «փրկչի» մա-

սին— Մեսիա (հին-եբրայերեն «Մեսիա» նշանակում է «օծյալ», այսինքն՝ «փրկիչ». հենց նույն բանն է նշանակում նաև հունական «Քրիստոս» խոսքը)։

Այս բոլոր առասպելները լայն կերպով տարածված էին այն ժամանակ, երբ սկսեց սաղմնավորվել քրիստոնեությունը։ Քրիստոնեականները փոխ վերցրեցին դրանց, վերամշակեցին և նրանցից ստեղծեցին իրենց «փրկիչ»-ի՝ Քրիստոսի, հրաշային ծննդյան և կյանքի մասին ավետարանական պատմումները։

Հին հեթանոսական կրոններից հենց նման փոխառում է հանդիսանում «Քրիստոսի ծնունդը» քրիստոնեական տոնը։ Սկզբնական շրջանում ողջ քրիստոնեական եկեղեցին ծննդի տոնը կատարում էր հունվարի 6-ին, փոխ առնելով այդ թվականը հին եգիպտացիներից, որոնք հունվարի 6-ին Օզիրիս աստծու ծնունդն էին տոնում։ Հայկական եկեղեցին մինչև այժմ էլ ծննդի տոնը կատարում է հունվարի 6-ին։ Ծննդի տոնակատարությունը փոխադրվեց դեկտեմբերի 25-ին, միայն չորրորդ դարում և անհա թե ինչպիսի հանգամանքներում։

Երրորդ և չորրորդ դարերում, Հռոմեական կայսրության (որտեղ ծնվեց և զարգացավ



քրիստոնեությունը) հեթանոսների խոշոր կրոնական պետական տոնը հանդիսանում էր պարսկական Միհր աստծո ծնունդը, որը կատարվում էր դեկտեմբերի 25-ին։ Հեթանոսների հետ միասին շատ քրիստոնյաներ նույնպես կատարում էին այդ տոնը։

Չորրորդ դարի կեսերին, Կոնստանդին թագավորի օրոք, քրիստոնեությունը հայտարարվեց պետական կրոն։ Որպեսզի հեթանոսներին քրիստոնեության կողմը գրավեն, Միհրի ծնունդը մտցվեց քրիստոնեական օրացույցի մեջ և վերածվեց «Քրիստոսի ծննդի»։

Եկեղեցականներն սկսեցին քարոզել Քրիստոսի մասին այն, ինչը հեթանոսներն իրենց Միհր աստծո մասին էին պատմում. իբր թե դեկտեմբերի 25-ին, քարանձավում, կույսից ծնվեց Քրիստոսը, նրան առաջինը երկրպագության եկան հովիվները և այլն։

Պահպանվել է քրիստոնյաների հնագույն մի օրացույց, որից երևում է, որ դեկտեմբերյան «Քրիստոսի ծնունդը» առաջին անգամ տոնվել է 354 թվին։

Ինչ վերաբերում է տարիների թվարկմանը, սկսած «Քրիստոսի ծննդից», ապա այդ բանն առաջարկվել է միայն 525 թվին, հռոմեական Դիոնիս-կրտսեր կուսակրոնի կողմից։

Ռուսաստանում այդ նոր թվագրությունը մտցրեց Պետրոս Առաջին թագավորը, սկսած 1700 թվից:

Այսպիսին է, Քրիստոսի ծննդյան և «Քրիստոսի ծնունդ» տոնի մասին հորինված հեքիաթների ծագումը:

## ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅԱՆ ԾԱԳՄԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Քրիստոսի ֆանտաստիկական կերպարն իր ժամանակի սոցիալական պայմանները ծնեցին: Նա, իր մեջ անդրադարձրել է ստրուկների, ազատաթողյալների (вольноотпущенник) և իրավազուրկ չքավորների, Հռոմի կողմից ստրկացված և ցրիվ տված ժողովրդների, հուսալքությունն ու անզորությունը:

Հենց հատկապես այս միջավայրում էր, որ սաղմնավորվեց ու զարգացավ սկզբնական քրիստոնեությունը:

Հսկայական հռոմեական կայսրության մեջ հիմնական արտադրող դասակարգը ստրուկներն էին, որոնք հավասարեցված էին բանող անասունին և զրկված էին մարդկային ամեն տեսակ իրավունքներից: Բազմիցս անգամ են ապստամբել ստրուկները: Հատ-



կապես վիթխարի է եղել ստրուկների ապըստամբությունն Սպարտակի ղեկավարությամբ 73—71 թվականներին, մեր թվագրությունից առաջ: Սպարտակի ապստամբությունը ճնշվեց չլսված դաժանությամբ: Հետևյալ հարյուրամյակի ընթացքում բռնկված ստրուկների ապստամբությունները նույնպես դաժանությամբ ճնշվեցին: Ստրուկների զգալի մասին ընդգրկեց անզոր ատելությունը դեպի հզոր Հռոմը, անտարբերությունը և հուսահատությունը:

Ո՛չ այնքան լավ էր մանր գյուղացիների դրությունը, որոնց չափից դուրս ծանր հարկերը ստրկացուցիչ կախման մեջ էին գցել վաշխառուներից, հասցրել էին լիակատար աղքատության: Աննախանձելի էր նաև չունեվոր ազատաթողյալների (вольноотпущенник) դրությունը, որոնք Հռոմում՝ պետական գանձարանից չնչին ողորմություններ էին ստանում, իսկ ծայրանահանգներում՝ ստիպված էին լինում իրենց գոյությունը պահպանել պատահական աշխատանքներով, մրցելով ստրուկների էժան աշխատանքի հետ: Հարկերը, կողոպուտները, աստիճանավորների

հարստահարությունները հյուծում և քայքայում էին ազգաբնակչությունը։

Իրեն ենթարկվող երկրներում Հռոմը ոչնչացրել էր գոյություն ունեցող հին քաղաքական կարգերը և կյանքի հին հասարակական պայմանները։

Հռոմն ամենուրեք մտցրել էր իր օրենքները և իր դատարանը, ծայրանահանգների ողջ ազգաբնակչությունը վերածվել էր հլու-հնազանդ հպատակների, «...Իսկ միայնակ, մանր ցեղերի կամ թե քաղաքների դիմադրությունը, Հռոմեական հսկայական, համաշխարհային պետության դեմ անհույս էր։ Որտե՞ղ էր ելքը, որտե՞ղ էր փրկությունը ստրկացվածների, ճնշվածների և աղքատացածների համար, ընդհանուր ելքը՝ մարդկանց այդ բոլոր տարբեր խմբերի համար, որոնք իրարից տարբեր, անգամ իրար հակասող շահեր ունեին։

Այդպիսի ելք գտնվեց. սակայն ոչ այս աշխարհում։ Իրերի այն ժամանակվա դրության օրոք ելքը կարող էր լինել միայն կրոնի ասպարեզում»։ (Էնգելս, երկեր, հատոր 16, 2-րդ մաս, էջ 423— ռուսերեն)։

Համաշխարհային Հռոմեական կայսրության հաստատումն ուղեկցվեց ազգային կրոնների անկումով և առաջ բաշեց մի ինչ-



որ նոր, ունիվերսալ, համամարդկային կրոնի անհրաժեշտությունը, որը պիտի համապատասխաներ նոր սոցիալական կարգերին, համաշխարհային կայսրության նոր հասարակական կառուցվածքին։

Քրիստոնեությունը, որն սկզբնական շրջանում իրենից ներկայացնում էր հրեական կրոնի մի աղանդը, հանդիսացավ հենց այդ նոր կրոնը, որը բոլոր տառապյալներին և ճնշվածներին «մխիթարություն» էր խոստանում։ Քրիստոնեությունը որպես աշխարհիկ չարիքներից փրկելու գրավական, առաջ քաշեց ողջ մարդկության քավության միտքը՝ փրկչի կողմից, որն իբր թե իրեն զոհել է մարդկանց մեղքերի համար։

Խոստանալով բոլոր ընչազուրկներին փրկություն և արդարություն «այն աշխարհում», քրիստոնեությունը գործնականում է՛լ ավելի ամրապնդեց աշխատավորների ծանր դրությունը։

Քրիստոնեական դավանանքի այս ռեակցիոն, շահագործողների համար շատ օգտակար դերը հաշվի առավ Կոնստանդին թագավորը, որը քրիստոնեությունը հռոմեական կայսրության տիրապետող կրոն հայտարարեց։ Այս բանի համար քրիստոնեական եկեղեցին Կոնստանդինին դասեց «սրբերի»

կարգը և հայտարարեց նրան «առաքյալին հավասարազոր», չնայած, որ ինքը, կայսրը, լինելով կնասպան, որդեսպան և երդմնազանց, հեթանոս մնաց և մինչև իր կյանքի վերջն էլ բարձրագույն քրմի կոչումը կրեց։

Ֆեոդալիզմը, որը փոխարինել էր ստրկատիրական կարգերին և կապիտալիզմը, որը ֆեոդալական շահագործումը փոխարինեց կապիտալիստականով, հարատև կերպով օգտվել են քրիստոնեական կրոնից, նրա՝ դասակարգերի համերաշխության, չընդդիմադրության իդեաներով, օգտագործելով նրան, որպես մասսաների ստրկացման, ճնշման և գազանային շահագործման զենք։

«Քրիստոնեության սոցիալական սկզբունքները,— ասում է Մարքսը,— արդարացրել են անտիկ ստրկությունը, փառաբանել են միջնադարյան ճորտատիրությունը և կարող են, կարիքի դեպքում, նույնպես պաշտպանել, թեկուզ և ողորմելի ծամածռությամբ, պրոլետարիատի ժամանակակից շահագործումը»։

## ՔՐԻՍՏՈՆԵԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՈՒ ԽՈՍՔԵՐՆ ՈՒ ԳՈՐԾԵՐԸ

Շահագործողների հավատարիմ ծառաները — տերտերները և եկեղեցականները, քա-



րոզում են, որ իբր թե քրիստոնեությունը բերեց «խաղաղություն երկրին և բարյացակամություն մարդկանց»։ Այդ, ամբողջապես կեղծ և երեսպաշտական քարոզն ունի միայն մի նպատակ՝ ներշնչել շահագործվող մասսաներին ստրկական հնազանդություն, հետ կասեցնել նրանց, հանուն իրենց ազատագրության մղվող պայքարից։

Թե՝ քրիստոնեությունն ի՞նչպիսի խաղաղություն և ի՞նչպիսի բարյացակամություն բերեց, լավ ցույց է տալիս այդ կրոնի տարածման և տիրապետության պատմությունը. դա, միջին դարերում ողջ Եվրոպան արյամբ ներկող դաժան պատերազմների պատմությունն է. դա, ինկվիզիցիայի պատմությունն է իր տանջանքներով, խարույկներով, որոնց վրա ոչնչացվել են հարյուր-հազարներով մարդիկ. դա, այլահավատների դաժան կոտորումների պատմությունն է, աշխարհի բոլոր մասերում՝ ստրկացված ժողովուրդների հանդեպ անամոթ դաժանությամբ կատարվող արյունաշաղախ ջարդերի պատմությունները։

Ամերիկայում, օրինակ, քրիստոնեական կոլոնիզատորները եկեղեցու բարյացակամությամբ հանում էին «պիղծ» հնդիկների գլուխներից քերթած գանգամաշկերը (կա-

շին, մաքերի հետ միասին) և այս «բարյացակամ» գործի համար հատուկ վարձատրություն էին ստանում. հնդիկի յուրաքանչյուր գանգամաշկը գնահատվում էր քսան դոլար...:

Բոլոր հափշտակողական, թալանչիական պատերազմները քրիստոնեական եկեղեցու օրհնությունն ու օգնությունն էին ստանում:

Եվ այժմ, երբ Անգլիայի ու մի շարք այլ երկրների կապիտալիստական խավերը, երկրորդ իմպերիալիստական պատերազմն ավելի ու ավելի են լայն ծավալում, ներգրավելով նրա մեջ նոր ու նոր ժողովուրդներ, եկեղեցականներն այդ սև գործում իմպերիալիստներին իրենց ամենագործնական օգնությունն են ցույց տալիս:

Այսպես օրինակ, Անգլիայի կաթոլիկ եկեղեցու գլուխը՝ կարդինալ Խինսլին իր՝ զինվորներին և նավաստիներին ուղղված, ռադիոյով արտասանած ճառում այս պատերազմն անվանեց «վեհանձն խաչակրաց արշավանք, հանուն քրիստոնեական կրոնի և արդարության»:

Կանտարական արքեպիսկոպոս Սկոտտը շարադրել է մի մեծ պոեմ, որում հիմնավորում է, թե Անգլիայի և ԱՄՆ-ի ռազ-



մական դաշինքն օրհնված է տեր աստծո կողմից:

Կոմունիստական պարտիաները հալածող և ՍՍՌՄ-ի դեմ պատերազմ պատրաստող իմպերիալիստները, հանձինս եկեղեցականների— աշխատավորների ազատագրության այդ ոխերիմ թշնամիների—իրենց հավատարիմ դաշնակիցներն են գտնում:

Հռոմի պապը և նրա օգնականները սիստեմատիկ ագիտացիա են մղում կոմունիզմի և Սովետական Միության դեմ:

Եկեղեցական քարոզները, կրոնական ռեակցիոն իդեաների, հակակոմունիստական լոզունգների պրոպագանդան «ծննդի» օրերին հատկապես է ուժեղանում: Քրիստոսի ծննդյան մասին ավետարանական հեքիաթներն ամեն կերպ շարաշահելով, կոչելով աշխատավորներին՝ հրաժարվել դասակարգային պայքարից, եկեղեցականները, որպես օրինակ, բերում են հեքիաթային Քրիստոսին, որն իբր թե ապրել է աղքատության մեջ և կրել է ամեն տեսակի տանջանքներ:

## ՄԵՐ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԿՐՈՆԻ ԴԵՄ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Սովետական Միության մեջ միլիոնավոր աշխատավորները կտրել են իրենց կապերը

կրոնական սնոտիապաշտությունների և հին, կրոնական կենցաղի հետ։ Բայց դրա հետ մեկտեղ դեռ կան աշխատավորների առանձին խմբեր, որոնք դեռ գտնվում են այդ սնոտիապաշտությունների ցանցում և դեռ կառչած են հին կենցաղի այդ մնացորդներին։

Եկեղեցականների ծննդյան օրերի քարոզները՝ համամարդկային համերաշխության մասին, «երկրի վրա տիրող խաղաղության» մասին, ներկայացնում են իրենից այն «ֆոկուսներից» մեկը, որոնք հաշվված են այն բանի վրա, որ օգնեն թշնամիներին՝ մեզ հանկարծակիի բերելու համար։ Մերկացնելով կեղծ, տերտերական քարոզները, մենք պետք է համառորեն բարձրացնենք մեր ռևոլյուցիոն զգոնությունը և ուժեղացնենք մեր երկրի պաշտպանունակությունը։

Եկեղեցականների և նրանց գործակալների ագիտացիան՝ «ծնունդը» տոնելու համար, ունի և ուրիշ վնասարարական նպատակներ, որոնք վերջին հաշվով նորից ուղղված են մեր սոցիալիստական հայրենիքի հզորության թուլացմանը։

Կրոնականները հաշվի են առնում, որ «ծնունդը», ինչպես և մյուս եկեղեցական տոները, հավատացյալ աշխատավորներին



հետ կգցի աշխատանքից, պրոգուլներ առաջ կբերի, կարգելակի արտադրական պլանների ժամանակին կատարմանը։

Մեր ագիտատորների խնդիրներից մեկը կայանում է նրանում, որ սիստեմատիկ, ամենօրյա, համբերատար և գործունյա հակակրոնական ագիտացիայով ու պրոպագանդայով՝ օգնել հավատացյալ աշխատավորներին կրոնական սնոտիապաշտություններից ազատվելու համար։

Անհրաժեշտ է նրանց բացատրել կրոնի, «ծնունդի» և այլ կրոնական տոների ռեակցիոն էությունը, մերկացնել ամեն գույնի և ուղղությունների, եկեղեցականների թշնամական գործունեությունը ժողովրդի հանդեպ։ Անհրաժեշտ է օգնել բոլոր աշխատավորներին՝ տիրապետելու առաջավոր մարքս-լենինյան մատերիալիստական աշխարհայացքին։

---

# ՄԻ ՔԱՆԻ ԽՈՍՔ ՄԵՐ ՊԱՏԻ ԹԵՐԹԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի և ընկեր Ստալինի ամենօրյա հոգատարության շնորհիվ, բոլշևիկյան մամուլն աճել ու աճում է բացառիկ արագությամբ:*

*Միութենական, ռեսպուբլիկական, մարզային ու շրջանային թերթերին զուգընթաց աճում են նաև մեր պատի թերթերը, կամ ինչպես մենք ենք ասում— ստորին մամուլը: Ամենանվազագույն հաշիվներով, ամբողջ Միության մեջ լույս է տեսնում 750 հազար պատի թերթ, որից միայն մեր ռեսպուբլիկայում՝ մոտ 10 հազար:*

*Պատի թերթերը հրատարակվում են ամենուրեք՝ գյուղում, դպրոցում, գործարա-*



*նում և այլ հիմնարկ-ձեռնարկներում:*

*Ստորին մամուլը մեր երկրի տնտեսական-քաղաքական կյանքում ունի իր որոշակի տեղը: Նա հսկայական օգնություն է ցույց տալիս մեր պարտիային և ժողովրդին՝ կոմունիզմի համար մղվող պայքարում:*

*Բոլշևիկյան մամուլի մասին Լենինի և Ստալինի գնահատականներն ամբողջովին վերաբերում են նաև պատի թերթերին: Պատի թերթը ևս կատարում է կոլեկտիվ կազմակերպչի, պրոպագանդիստի և ագիտատորի դեր. և, ինչպես մեր տպագիր մամուլը, այնպես էլ ստորին մամուլը «...պետք է աճի ոչ թե օրից-օր, այլ ժամ առ ժամ,— այդ՝ մեր պարտիայի ամենասուր և ամենաուժեղ զենքն է» (Ստալին):*

*Սակայն, դրա հետ միասին, պատի թերթերն ունեն իրենց մի շարք առանձնահատուկ կողմերը:—*

*Նախ և առաջ, պատի թերթերը «...հանդիսանում են առաջավոր պրոլետարների ստեղծագործության պրոդուկտը»,— ասված է պարտիայի 12-րդ համագումարի բանաձևերից մեկում:*

Իսկ ի՞նչ է նշանակում այդ։ Այդ նշանակում է այն, որ պատի թերթն սկզբից մինչև վերջ պետք է կառուցվի կոլեկտիվ ուժերով։ Պատի թերթում պետք է ակտիվ մասնակցություն ունենա հիմնարկի, ձեռնարկի, կոլխոզի ամենաառաջավոր, ամենագիտակից մասը։ Ինչպես տպագիր թերթը, այնպես էլ պատի թերթը, չի կարող մի առանձին անհատի ստեղծագործության արգասիք լինել։ Ընդհակառակը, ինչպես ասացինք, դա աշխատավորների տվյալ կոլեկտիվի, խմբի հասարակական միացյալ աշխատանքի պտուղն է։

Պատի թերթի երկրորդ առանձնահատկությունն այն է, որ նա գերազանցապես պետք է կառուցված լինի տեղական փաստերի և օրինակների հիման վրա։ Ոչինչ այնքան վնասակար չի կարող լինել պատի թերթի համար, որքան վերացականությունը, «ընդհանուր հարցերով», «ընդհանուր պրոբլեմներով» տարվելը։

Դժբախտաբար, դեռ կան պատի թերթեր, որոնք մեծ սիրով իրենց սյունակները տրամադրում են միջազգային բնույթ կրող հարցերին, խոսում ամեն մի առիթով, բայց տեղական պրակտիկայի մասին ոչինչ չեն ուզում գրել։



Մինչդեռ, պարտիան այդ հարցի առթիվ ևս ունի իր որոշակի ցուցումը։ «Պատի թերթում,— ասված է ՀամԿ(բ)Պ ԿԿ որոշումներից մեկում,— անհրաժեշտ է հոդվածներ զետեղել այնպիսի թեմաների վերաբերյալ, որոնք սերտորեն կապված են ձեռնարկության դրության, նրա գործունեության, կազմակերպման հետ...»։

Նույնիսկ Միութենական նշանակություն ունեցող կամպանիաներին, տոներին, պատի թերթը չպետք է արձագանքի «ընդհանուր առմամբ», այլ կոնկրետ ձևով։ Ուրիշ խոսքով, այդ տոների ու կամպանիաների լուսաբանումը ևս պետք է սերտորեն կապվի հիմնարկում, ձեռնարկում, կոլխոզում, ՄՏԿ-ում կատարվող պրակտիկ աշխատանքների հետ։

Պատի թերթը պետք է օպերատիվ լինի․ սա նրա երրորդ առանձնահատկությունն է։ Իսկ լինել օպերատիվ, այդ նշանակում է ամուր թելերով կապված լինել մասսաների հետ։

Մամուլի ուժը նրա մասսաների հետ ունեցած կապի մեջ է։ Մասսաների հետ ու-

նեցած կապը թերթին հնարավորություն կտա գտնել գլխավոր օղակը, զատել մանրը մեծից, գլխավորը՝ երկրորդականից:

Իսկ թերթի համար դա ամենից կարևորն է: Մեր կյանքը բազմակողմանի է, հետևաբար նա լի է և բազմաթիվ հարցերով, որոնք բոլորն էլ առանձին վերցրած՝ ունեն իրենց նշանակությունը: Սակայն, այն թերթն է լավ աշխատում, որը կարողանում է ընտրություն կատարել այդ բազմազանության մեջ և գտնել տվյալ մոմենտի համար ամենից առաջնակարգը, ամենից հրատապը: Իսկ այն թերթը, որն անցնում է կյանքի ամենագլխավոր երևույթների կողքից, չի կարողանում տարբերել հիմնական հարցը երկրորդականից, չի կարող լավ համարվել և հեշտությամբ կկորցնի իր կապը մասսաների հետ, կդադարի պայքարի ձեռքին սուր զենք լինելուց:

Մեր այս միտքն ապացուցելու համար, վերցնենք երկու օրինակ, երկուսն էլ Կոտայքի շրջանից, որոնցից մեկը դրական, մյուսը՝ բացասական:

Ահա Բանաքեռի Օրջոնիկիձեի անվան կոլխոզի վարչության և պարտիական կազմակերպության օրգան «Բոլշևիկյան Տեմ-



պով» պատի թերթը: Թերթի խմբագիր ընկ. Համբարձում Ահարոնյանն ստորին մամուլի հեռակա դասընթացների ունկնդիր է: Նա այդ կուրսերից ստացածը կարողանում է գործադրել իր պրակտիկ աշխատանքում— պատի թերթը հրատարակելիս:

«Բոլշևիկյան Տեմպովը» լույս է տեսնում 15 օրը մեկ անգամ, իսկ դաշտային աշխատանքների ժամանակ՝ ավելի հաճախ— 3—5 օրը՝ մեկ: Պատի թերթի շուրջը համախմբված են հարյուրավոր մարդիկ, իսկ 50 հոգի սիստեմատիկաբար թղթակցում են: Ինչի՞ մասին է գրում թերթը. այս հարցին կարելի է պատասխանել լոկ մեկ բառով.

— Կոլխոզի...

Այդ ինքնին նշանակում է, որ «Բոլշևիկյան Տեմպով»-ը հասկացել է իր ֆունկցիաները: Նա զերծ է վերացական, ընդհանուր դատողություններից և հարուստ է կոնկրետությամբ:

Ահա՝ «Այգեգործական № 4 բրիգադան առվույտի սերմացուն թողել է անձրևի տակ: Սերմը փչանում է...»— ահազանգում է թերթը և հաջորդ համարում տեղեկացնում է ընթերցողին ձեռք առած միջոցների մասին:

Մի քանի կոլխոզներ, օգտվելով կոլխոզվարչության թույլ վերաբերմունքից, անասուններին բաց էին թողել այգիները: Այգիները փչանում էին: Թերթի ելույթից հետո, գործը կարգավորվում է: Կարելի է ասել, որ թերթի տեսադաշտից դուրս չեն մնում կոլխոզի կյանքին վերաբերող ոչ մի հարց: Նա գարնանացանի, աշնանացանի, բերքահավաքի, կալսման և գյուղատնտեսական մյուս բոլոր աշխատանքների մասին գրելուց բացի, լուսաբանում է նաև դպրոցի գյուղական սովետի աշխատանքները: Եվ այսպես, թերթն իր թղթակիցների միջոցով նկատում է կոլխոզի թերությունները և օժանդակում նրանց վերացմանը: Սակայն, նա լոկ ահազանգողի դերում հանդես չի գալիս, նա գրում է նաև աշխատանքի դրական օրինակների մասին և օգնում է այդ օրինակների տարածմանն ու ավելացմանը:

«Բոլշևիկյան Տեմպով»-ն ունի հաճելի արտաքին ձևավորում, թղթակցությունները գրված են մաքուր, դյուրընթեռնելի, թերթում կան ֆոտո-նկարներ, կարիկատուրաներ:

Միանգամայն հակառակ պատկեր է ներ-



կայացնում Ելլարի գյուղսովետի, կոլխոզվարչության և պարտկազմակերպության օրգան՝ «Սոցիալիստական նվաճում» պատի թերթը:

Այս թերթը նախ և առաջ, գրված է մի այնպիսի խառը ձեռագրով, որը դժվարությամբ են կարդում հենց իրենք՝ թերթը խմբագրողները: Թերթը միապաղաղ, տըխուր արտաքին ունի: Բայց դրանով չի վերջանում բանը: Այդ պատի թերթում, որ ամենից գլխավորն է, բացակայում է պլանային աշխատանքը: Թերթը գրում է ամեն ինչի մասին՝ գարնանացանի, աշնանացանի, բերքահավաքի, կալսման, նույնիսկ մահազդներ է տպագրում, բայց այնուամենայնիվ, նա իր ընթերցողների շրջանում անհրաժեշտ ազդեցություն և հեղինակություն չունի: Դրա պատճառն այն է, որ այդ պատի թերթը վատ է կապված կոլխոզի հետ, թղթակիցների լայն ակտիվ չունի: Թերթը լցնում են խմբկոլի անդամները և հենց դրա համար է, որ հոդվածների մեծ մասի տակ չկա ոչ մի ստորագրություն:

Թերթը չի հետևում իր հատ ու կենտ ահազանգների հետևանքներին, իսկ տեղի

կազմակերպություններն էլ իրենց հերթին ուշադրություն չեն դարձնում ոչ թերթի վրա և ոչ էլ նրա ահազանգումներին:

Իր վերջին համարում «Սոց. Նվաճում»-ը գրում է, որ— Ծխախոտի չորանոցի պահակներն իրենց պոստերում քնում են: Կոլխոզվարչությունը, գյուղսովետի գործկոմի նախագահի ասելով, այդ հարցը քննելու է իր հերթական նիստում: Հոդվածի հրապարակումից բավական ժամանակ արդեն անցել է, և մի քանի հերթական ու հերթից դուրս նիստեր են տեղի ունեցել, բայց հոդվածը դեռ չի քննված:

Այս փաստը մեզ իրավունք է տալիս ասելու, որ մի շարք տեղերում, պարտիական կազմակերպությունները չեն զբաղվում կամ շատ քիչ են զբաղվում պատի թերթերով: Մինչդեռ, պարտիական ճիշտ ու գործնական ղեկավարությունից է կախված թերթի աշխատանքի որակը: Այն պատի թերթն է հեղինակավոր, բարձրորակ ու ազդեցիկ, որով զբաղվում է տվյալ պարտ. կազմակերպությունը, և, ընդհակառակը, այն պատի թերթն է անորակ, տաղտկալի ու անազդեցիկ, որին ուշադրություն չի դարձնում պարտկազմակերպությունը:



Ամեն մի պարտիական կազմակերպության ձեռքին, պատի թերթը չափազանց կարևոր մի զենք է՝ պայքարելու պրոգուլշչիկների դեմ, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար և առաջավորների լավագույն փորձի փոխանակման ու կոմունիստական դաստիարակության գործում:

---

Պատասխանատու խմբագիր՝
Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Սրբագրիչ՝ Հ. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ
ՎՖ 2743
Պատվեր՝ № 1109. տիրաժ 7946
Հանձնված է արտադրության 18/XII 1940 թ.
Ստորագրված է տպագրության 24/XII 1940 թ.

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան

ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ!

ՄԵՐ ԲՈԼՈՐ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ ԵՎ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

ԲԱՑՎԱԾ Է

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի 1941 ԹՎԻ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Բաժնեգինն է ամսական 50 կոպ.:
Լույս է տեսնում ամիսը 2 անգամ:

ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԱԳԻՏԱՏՈՐ ՊԵՏՔ Է ԼԻՆԻ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի ԲԱԺԱՆՈՐԴԸ

ՇՏԱՊԵԼ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵԼՈՒ